«ՅԱՌԱՋ»Ի ՅԱՋՈՐԴ ԹԻՒԸ լոյս կը տեսնէ կիրակի օր, տարեգլուխի արձակուրդին առթիւ :

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՊՈԼՍԷՆ կը հեռագրեն թէ գինուորական ատեանը ազատ արձակեց 81 ամբաստան–եալներ որոնք բանտարկուած էին իբրեւ համայնավար : Արձակեալները պիտի դատուին միւսներուն հետ : Ամբաստան–եալներուն թիւն է 167 :

ՄԱՐՈՔԻ մէջ յիսուն հոգի սպաննուած եւ 117 հոգի վիրաւորուած են Սուլթանին գահընկէցութենէն ի վեր, համաձայն պաշտօնական տեղեկագրի մը :

ՑՈՒՆԱՍՏԱՆ եւ Պուլկարիա վերջնա–պէս համաձայնեցան Եւրոս գետի մասին, որ կռուախնձոր դարձած էր երկար ատե–նէ ի վեր : Նոր սահմանագիծը պիտի ճշդեն երկաթ ձողեր դնելով գետին մէջ :

ՋԻՆՈՒՈՐԱԿԱՆ ՕԴԱՆԱՒ մը անհետա–ցաւ Ալժէրի եւ Մոն տը Մարսանի միջեւ, 11 սպաներով եւ ենթասպաներով :— Փա–րիզ – Պրիւսէլ ճամբուն վրայ, պելժիա–կան օդանաւի մը մէկ դուռը հովէն քշուե–լով, մատակարարը անդունդ գլորեցաւ 3–500 մեթր բարձրութենէ մը :

ՑՈՒՐՏԸ հետզհետէ կը սաստկանայ Փարիզի մէջ : Մասնագէտներ կը կարծեն թէ այսպէս պիտի շարունակուի յունուարի ընթացքին, ամբողջ Ֆրանսայի մէջ եւ այլուր :

ԱՐԵՒՄՏԵԱՆ Գերմանիոյ վարչապետը նոր տարուան առթիւ ճառ մը խօսելով, յայտարարեց թէ գերման ժողովուրդը խոր յուսախաբութեան պիտի մատնուի, եթէ իր գերիշխանութիւնը չվերահաս–տատուի եւրոպական միացեալ բանակի հաստատումով : Այս առթիւ յիշեց նաեւ Սարի խնդիրը, յոյս յայտնելով թէ գոհա–ցուցիչ կարգադրութեան մը պիտի յանգի :

ԵԳԻՊՏՈՍԻ կառավարութիւնը Գահիրէ հրաւիրեց նաեւ Հնդկաստանի եւ Փաքիս–տանի դեսպանները, խորհրդակցելու հա–մար Միջին Արեւելքի կացութեան մասին : Արդէն Գահիրէ կը գտնուին Լոնտոնի, Փարիզի եւ Մոսկուայի դեսպանները :

ԴԱՆՈՒԲԸ բացուած է միջազգային նա–ւարկութեան առջեւ, ինչպէս կը ծանուցանէ Եուկոսլաւիոյ կառավարութիւնը :

ԳԱՀԻՐԷԻ ոստիկանութիւնը քննելով Թուրքայի դեսպանին գոյքերը, 25·000 ոսկի արժողութեամբ ադամանդ եւ ոսկի գտաւ : Դեսպանը, որ Պէյրութ կ'եր–թար, բողոքեց, բայց անօգուտ :

ԹՂԹԱՏԱՐԱԿԱՆ գործադուլը աւելի մեղմացած էր երէկ : Բանթողները հետ–զհետէ կը վերադառնան : Բայց Աշխա–տանքի Դաշնակցութիւնը եւ ուրիշ սենդի–կաներ կը շարունակեն պայքարը, գոհա–ցում ստանալու համար :

ԱՆԳԱՐԱՅԷՆ կը հեռագրեն թէ Իսմէթ Ինէօնիւ բուռն ճառ մը խօսեցաւ, բողո–քելով «Հալք»ի 500 մասնաճիւղերուն ըս–տացուածքներուն գրաւման դէմ : Ըստ թէ դեմոկրատ կառավարութիւնը կ'օգտա–գործէ պետական անթերը, «սուտեր եւ զրպարտութիւններ տարածելու համար իրենց մասին» :





## «ՅԱՌԱՋ» ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

Պ · Մկրտիչ Գազանճեան Կաղանդի առ–թիւ մէկ տարեկան «Յառաջ» կը նուիրէ իր մեծ մօր Տիկին Նիկոլեանի, Փարիզ :

### ՓԱՐԻԶԻ ՀԱՅՈՑ ԵԿԵՂԵՑԻԷՆ

Յունուար 1 Ուրբաթ, Կաղանդ, պատա–րագ ժամը 10ին :

Յունուար 5, Ճրագալոյց Ս · Ծննդեան, երեքշաբթի երեկոյեան սկիզբ ժամերգու–թեան ժամը 15·30ին, Ս · պատարագ ժա–մը 17ին :

Յունուար 6, Տօն Ս · Ծննդեան եւ Աստ–ուածայայտնութեան, չորեքշաբթի, ըս–կիզբ ժամերգութեան ժամը 8ին, Ս · պա–տարագ ժամը 10ին, պիտի պատարագէ եւ քարոզէ Սերովբէ Ծ · Վ · Մանուկեան : Յետ պատարագի Ջրօրհնէքի արարողու–թիւն :

Յունուար 7, Բ · օր Ս · Ծննդեան, յի–շատակ Մեռելոց, հինգշաբթի Ս · պատա–րագ ժամը 10ին :

### ԿԱՂԱՆԴԻ ԾԱՌ
### ՀԱՆԴԷՍ ԽՆՋՈՅՔ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Քղիի Հայր · Միու–թեան կողմէ : Այս շաբաթ ժամը 21էն մին–չեւ լոյս, 53 ռիւ Կրինեան, Սէրքլը Ռէ–փիւպլիքէնի սրահը, առաջին յարկ :

Կը խօսի Պ · Կ · ՓՈԼԱՏԵԱՆ

Քղեցի երիտասարդները պիտի ներկա–յացնեն «Նահապետ Աղա» ղաւեշտը :

Երգ Գ · Շէհրիրեանէ, հայկական եւ եւրոպական պարեր : Հայկական պարե–րուն կ'ընկերանայ Պ · Հրանտ Փանոսեանի խումբը : Կաղանդ պապան նուէրներ պիտի բաժնէ բոլոր պզտիկներուն :

Մուտքը ազատ է :

### ԸՆՏԱՆԵԿԱՆ ԽՆՋՈՅՔ

Համախարբերդի Միութեան Կարտանի մասնաճիւղը նոր տարուան առթիւ սար–քած է ընտանեկան խնջոյք մը, այս շա–բաթ ժամը 21էն մինչեւ լոյս, Ավընիւ տը Նիս, Պ · Ճիպէլոյի ընդարձակ սրահին մէջ : Իւրաքանչիւր ընտանիքի պիտի ըս–րամադրուի առանձին աթոռ եւ սեղան :

Ըմելիք, թարմ եւ չոր պտուղ, առատ կերուխում : Հայկական երգեր եւ պարեր տեխքերու վրայ : Արտասանութիւն եւ զա–նազան հաճելի անակնկալներ :

Մուտքը ազատ է :





### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Պ · Սիմոն Օհանեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստի պաշտօն պիտի կատարուի այս կիրակի Փարիզի Հայոց եկեղեցին իրենց կնոջ եւ մօր՝

ԱՂԱՒՆԻ ՕՀԱՆԵԱՆԻ

մահուան Բ · տարելիցին առթիւ :

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները :

ԿԸ ՓՆՏՌՈՒԻ Աղավարդ Աւետիսեան, Վանեցի որ 1922ին Քորֆու տարուած եւ անկէ ալ Քանատա : Մօրը անունը Մար–գարիտ, հօրը Աւետիս : Իրմէ լուր առնը–ւած է մինչեւ 1952ի առաջին ամիսներուն : Տեղեկացնել Մարգարիտ Զուլֆաճեանի, 8 ռիւ Պիւֆօ, Փարիզ (9), Ֆրանս :

### ԳՈՐԾ ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Հայ երիտասարդ մը փոխադրութեան գործ կը փնտռէ առանց կառքի կամ իր կառքով (Փէժօ 203) ուեւէ հաստատու–թեան մէջ :

Tél. CHA. 04 - 93



## — ՅՈՒՇԱՏԵՏՐ —

ՍԵԲԱՍՏԻՈՅ Մուրատ Ուսումնասիրացը ժողովի կը հրաւիրէ իր բոլոր գործօն, պատուոյ ի մասնաւորաբար Փետր · 20ի հանդէսին յանձնախումբի անդամները այս կիրակի ժամը ճիշդ 16ին, Իսիի Մը–լինեան դպրոցը (Ռիւ տը լա Տէֆանս) : Թղթատարի գործադուլի պատճառով ան–հատական հրաւէր չի ղրկուիր :

### ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ ԵԿԵՂԵՑԻ

3 Յունուար կիրակի, Արհի · Պահապան–եան եպիսկոպոսի մահուան Գ · տարելիցի առթիւ հոգեհանգստեան պատարագ ժա–մը 10·30ին :

10 Յունուար : Յայտնութիւն եւ Մկր–տութիւն : Ժամը 9·30ին ժամերգութիւն : Ժամը 10·30ին ձայնաւոր պատարագ եւ Ջրօրհնէք :

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ .— Հ · Մ · Մ ·ի երեկոյ–թը յունուար 16 Շաբաթ գիշեր, Ազգ · Տան մէջ :







Imp. Araxes - 46, Rue Richer, Paris (9e)

յանդիլ, գգալապէս կրճատելու համար միւս բոլոր սպառազինութիւնները եւ բանակները: Տարակոյս չկայ որ այսպիսի կարգադրութեան մը շնորհիւ պիտի զեղչուին զինուորական ծախքերը եւ պիտի բարւոքի ժողովուրդներու տնտեսական վիճակը»:

ԶՈՐՍԵՐՈՒ ԺՈՂՈՎԸ ՅՈՒՆՈՒԱՐ 25ԻՆ

Արեւմտեան երեք պետութիւնները Յունուար 1ին պատասխանեցին Խ. Միութեան Դեկտ. 26 Թուակիր ծանուցագրին, որ կ'առաջարկէր Յունուար 25ին գումարել Զորսերու ժողովը, Պերլինի մէջ: Երեքն ալ «ցաւ յայտնելով հանդերձ որ Խ. Միութիւնը չէ ընդունած իրենց առաջարկած Թուականը, 4 Յունուար, կը յայտարարեն թէ կ'ընդունին խորհրդային կառավարութեան Թելադրած Թուականը, 25 Յունուար»: Յետոյ կ'ընդունին որ մարզպաններու ներկայացուցիչները քննեն ժողովին պատրաստութեան եւ վայրին վերաբերեալ խնդիրները: Միեւնոյն ատեն դիտել կուտան թէ դաշնակիցներու վերստուգիչ յանձնախումբին նախկին շէնքը անհրաժեշտ դիւրութիւնները կը ներկայացնէ իբրեւ ժողովատեղի:

Գալով բուն ժողովին եւ օրակարգի խնդիրներուն, երեք պետութիւնները նախապէս յայտնած ըլլալով իրենց տեսակէտները, անհրաժեշտ չեն դտներ կրկին անդրադառնալ:

× Փարիզի, Ուաշինկթընի եւ Լոնտոնի մէջ դիտել կուտան թէ Մալենկովի յայտարարութիւնը աւելի ջերմ տրամադրութեամբ տոգորուած է, բաղդատելով Սթալինի հաւաստիքներուն հետ: Եւ կը սպասեն արդիւնքին, Պերլինի ժողովին մէջ:

ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՑՈՒՐՏԸ հետզհետէ կը սաստկանայ Ֆրանսայի մէջ, Ատլանտեանէն մինչեւ Միջերկրական: Փարիզի մէջ 8ի իջած էր ջերմաչափը, կեդր. Ֆրանսայի մէջ 18–22ի են: Ձիւն կը տեղայ լեռնային շրջաններուն մէջ:

ԱՆԳԼԻՈՅ նախկին նախարարներէն Տըֆ Քուփըր, այլ անուամբ Լորտ Նորուիչ, մեռաւ շոգենաւին մէջ, երբ Սպանիա կ'երթար: Երկար ատեն Փարիզի անգլ. դեսպան եղած է:

ՄԱՐՈՔԻ մարզպանը, զօր. Կիյոմ, որ Փարիզ եկած էր կացութիւնը պարզելու համար, Քազապլանքա վերադառնալով յայտարարեց թէ «վճռած է խափանել ահաբեկչական արարքները: Դատական ատեանները պիտի գործեն կարելի արագութեամբ»: Այս առթիւ զօրավարը պնդեց թէ ահաբեկիչները կը քաջալերուին դուրսէն, կարգ մը պետութեանց կողմէ, մամուլի եւ անթելի միջոցաւ:

ԱՐԵՒԵԼԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ կառավարութեան վերադարձուեցան 33 մեծ գործարաններ որոնք Ռուսերու տիրապետութեան տակ էին պատերազմէն ի վեր:— Տեղեկագրի մը համաձայն, 1953ին 22 Գերմաններ մահուան դատապարտուած են, 15 հոգի ցկեանս բերդարգելութեան, իսկ 435 հոգի ալ համագումար 2640 տարի բանտարկութեան, իբրեւ «վնասարար եւ լրտես»:

ԻՍՐԱՅԷԼԻ մէջ մտահոգութիւն կը տիրէ, նկատելով որ Մ. Նահանգները որոշած են զինուորական օգնութիւն ընծայել Եգիպտոսի: Կ'ըսուի թէ նոյէն դիմում պիտի կատարուի մեծ պետութեանց:

617.200 ԳԵՐՄԱՆՆԵՐ արեւելեան շրջանէն արեւմուտք ապաստանած են վերջին հինգ տարիներու ընթացքին:

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ՄԱՐՍԷՅԼ.— Մեր շնորհակալութիւնները կը յայտնենք «Մշակոյթի Օրուան» բանախօսներ՝ Պ. Պ. Ժան Պալարի, Շ. Նարդունիի եւ Լիւք Անտրէ Մարսէլի, երգողներ՝ Տիկին Զ. Մորընոնի, եւ բոլոր այն երիտասարդներուն եւ օրիորդներուն որոնք փայլ տուին գեղարուեստական բաժնին նուագով, երգով, արտասանութեամբ:

Շնորհակալութիւններ՝ Հայրենակցական, Մշակութային, Երիտասարդական, Մարզական միութեանց եւ Կապոյտ Խաչի մասնաճիւղերուն, որոնք թէ Նարդունիին ի պատիւ սարքած գինեձօնի եւ թէ Մշակոյթի Օրուան առթիւ օժանդակեցին նիւթապէս եւ բարոյապէս:

Մասնաւոր շնորհակալութիւններ նաեւ բոլոր այն հայրենակիցներուն, որոնք վերջերս պատուոյ անդամ արձանագրուեցան Համազգային Միութեան: Համազգայինի Մարսէյլի մասնաճիւղի վարչութեան նախագահ՝ Կ. Փօլատեան, դանձապահ՝ Կ. Շալճեան, քարտուղար՝ Ազգին:

« ՅԱՌԱՋ »Ի
ԲԱՐԳԱՒԱՃՄԱՆ ՀԱՄԱՐ

Շնորհակալութեամբ ստացանք.— Հաճի Նոտարեան եղբ.է (Սէն Ռէմի) 500 ֆրանք, Պ. Անդրէասեանէ (Նիս) 500 ֆր.:

«ՅԱՌԱՋ» ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

Տիկին Մ. Վարդուկեանի (Իսի)մէկ տարեկան «Յառաջ» կը նուիրէ իր բարեկամներէն մէկը:

ՓԱՐԻԶԻ ՀԱՅՈՑ ԵԿԵՂԵՑԻԷՆ

Յունուար 5, Ճրագալոյց Ս. Ծննդեան, երեքշաբթի երեկոյեան սկիզբ ժամերգութեան ժամը 15.30ին, Ս. պատարագ ժամը 17ին:

Յունուար 6, Տօն Ս. Ծննդեան եւ Աստուածայայտնութեան, չորեքշաբթի, սկիզբ ժամերգութեան ժամը 8ին, Ս. պատարագ ժամը 10ին, պիտի պատարագէ եւ քարոզէ Սերովբէ Ծ. Վ. Մանուկեան: Յետ պատարագի Ջրօրհնէքի արարողութիւն:

Յունուար 7, Բ. օր Ս. Ծննդեան, յիշատակ Մեռելոց, հինգշաբթի Ս. պատարագ ժամը 10ին:



ՄԻ ՄՈՌՆԱՔ

Յունուար 9ին, Շաբաթ օր, ժամը 14.35 — 15.05 Փարի Էնթէրնի վրայ պիտի լսէք հայերէն ժողովրդական երգեր (նուագի բաժինը Պ. Սէյրան Պարսամեանէ):



ԱՅՍ ՏՕՆԱԿԱՆ ՕՐԵՐՈՒՆ
ԱՄԵՆԱԸՆՏԻՐ ԵՒ ՄՆԱՅՈՒՆ ՆՈՒԷՐԸ՝
ՁԵՐ ՍԻՐԵԼԻՆԵՐՈՒՆ եւ ՁԵՐ
ԲԱՐԵԿԱՄՆԵՐՈՒՆ ՀԱՅ ԿԱՄ ՕՏԱՐ
ԼՈՅՍ ՏԵՍԱՒ
LUC-ANDRE MARCEL -ի
GRÉGOIRE DE NAREK
et
ANCIENNE POESIE ARMENIENNE
(Ed. des Cahiers du Sud)
կոթողային հատորը

Գեղարուեստական մաքուր հրատարակութիւն, ուր հեղինակը ի վեր կը հանէ ԳՐԻԳՈՐ ՆԱՐԵԿԱՑԻԻ հանճարը, եւ համաշխարհային արժէքը հայ բանաստեղծութեան: Գին՝ 1000 ֆրանք:

Դիմել՝ «Անդաստան»ի խմբագրութեան, տպ. Արաքս 46, Rue Richer, Paris կամ «Յառաջ»ին:

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ ԵՒ ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Մարսէյլի Աղք. – Որբախնամ մարմինս իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ վարչութեան անդամ Պ. Յակոբ Փափազեանի եւ իր բոլոր պարագաներուն, եղբօրը ողբացեալ Պ. Եղիշէ Փափազեանի կըսկծալի մահուան առթիւ: Նոյն ատեն շնորհակալութեամբ կ'արձանագրէ փոխան ծաղկեպսակի եղած հետեւեալ նուէրները.— Պ. Աստուր Համալեան երկու հազար ֆր., Պ. Մելքոն Պօղոսեան, Պ. Ղազար Օտապաշեան, Տէր եւ Տիկին Փիէռ Ժիբօն, Սէնթ Թիւլ երկու հազարական ֆրանք, Պ. Մուշեղ Սարեան հազար ֆրանք, Պ.Պ. Միսաք Ապրիքեան հազար ֆր., Իսպիրեան հազար ֆր. Անդրանիկ Թումայեան 500 ֆր., գումար 11.500 ֆրանք:



— ՅՈՒՇԱՏԵՏՐ —

ՍԵԲԱՍՏԻՈՅ Մուրատ Ուսումնասիրացը ժողովի կը հրաւիրէ իր բոլոր գործօն, պատուոյ ի մասնաւորաբար Փետր. 20ի հանդէսին յանձնախումբի անդամները այս կիրակի ժամը ճիշդ 16ին, Իսիի Խըրիմեան դպրոցը (Ռիւ տը լա Տէֆանս): Թղթատարի գործադուլի պատճառով անհատական հրաւէր չի ղրկուիր:

ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ ԵԿԵՂԵՑԻ

3 Յունուար կիրակի, Արհի. Պահապանեան եպիսկոպոսի մահուան Գ. տարելիցի առթիւ հոգեհանգստեան պատարագ ժամը 10.30ին:

10 Յունուար: Յայտնութիւն եւ Մկրտութիւն: Ժամը 9.30ին ժամերգութիւն: Ժամը 10.30ին ձայնաւոր պատարագ եւ Ջրօրհնէք:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— ԼԻՈՆԻ Հայկազեան դպրոցի Ամանորի հանդէսը Կիրակի, 17 Յունուար:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Հ. Մ. Մ.ի երեկոյթը յունուար 16 Շաբաթ գիշեր, Ազգ. Տան մէջ:



Imp. Araxes - 46, Rue Richer, Paris (9e)

ՀՆԴԿԱՍՏԱՆԻ մէջ կռիւները կը սաստկանան հետզհետէ: Սիամի կառավարութիւնը առաջարկեց Քամպոճի միացեալ ճակատ կազմել, պայքարելու համար համայնավարութեան դէմ: Փարիզի մէջ համաձայն չեն այսպիսի զինակցութեան մը, պայմանաւ որ ճանչցուին Ֆրանսայի իրաւունքները:

ԻՏԱԼԻՈՅ նոր դահլիճը չէ կազմուած տակաւին: Հանրապետութեան նախագահը խորհրդակցութեան հրաւիրեց նաեւ համայնավար կուսակցութեան ընդհ. քարտուղարը, Թոլիաթթի, որ առաջարկած է երկրին վարչութեան մէջ պատասխանատուութիւններ յանձնել նաեւ համայնավար եւ ընկերվար կուսակցութեանց: Վարչապետութեան թեկնածու կը համարուի Պ. Ֆանֆանի: Եուկոսլաւիոյ մէջ կը սպասեն իտալական նոր դահլիճին կազմութեան, լուծելու համար Թրիէսթէի խնդիրը:

ԵԼԵԿՏՐԱԿԱՆ ՈՒՂԵՂ մը շինուած է Նիւ Եորքի մէջ, թարգմանութիւններ կատարելու համար: Առաջին փորձը տեղի ունեցաւ մեծ յաջողութեամբ: Տասը երկվայրկեանի մէջ ռուսերէնէ անգլերէնի թարգմանուեցաւ չորս տողէ բաղկացած նախադասութիւն մը:

ՍԵՆՏԻՔԱՆԵՐԸ դիմում կատարեցին վարչապետին, խնդրելով որ-ընթացք տայ նուազագոյն օրապահիկի մասին առաջարկուած յաւելման:

ՊԱՊՈՒԹԵԱՆ եւ հաւատաքննութեան նոր ցուցահանդէս մը բացուած է Լենինկրատի մէջ, բազմաթիւ լուսանկարներով եւ վաւերագիրներով, ապացուցանելու համար թէ «Վատիկան միջազգային յետադիմութեան կեդրոններէն մէկն է»:

ԱՌԱՏ ՁԻՒՆ ԿԸ ՏԵՂԱՅ կեդրոնական Ֆրանսայի մէջ, դժուարացնելով հաղորդակցութիւնները: Երբեմն ալ դադրած է շատ մը ճամբաներու վրայ: Կարգ մը գիւղեր հաղորդակցութենէ զրկուած են Արտէշի նահանգին մէջ: Հունձքերը վնասուած են Փուվանսի եւ ուրիշ գաւառներու մէջ:

### ԽՆՋՈՅՔ ՆՈՐ ՏԱՐՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Նախաձեռնութեամբ Հ. Ց. Դ. Նոր Սեւրընդի Անիէնի մասնաճիւղին:

Կիրակի 17 Յունուար ժամը 16 — 23, 149 bis. Av. d'Argenteuil, Asnières

### ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԽՆԱՄՈՒԱԾ ԲԱԺԻՆ

Խմբերգ, մեներգ, պար, արտասանութիւն եւ «Թորոս ծառայի արկածները», խիստ ծիծաղաշարժ զաւեշտ, երկու արար: Ձոխ պիւֆէ: Ազատ մուտք

Փորթ Քլիշէն թիւ 140, Փորթ Շամփէռէն թիւ 165 հանրակառք, իջնել Փլաս Պուրկինեօն, կամ Սէն Լազարէն շոգեկառք, իջնել Պուա Քոլոմպ:

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ. — Ֆ. Կ. Խաչի Մարսէյլի վարչութենէն (Բ. եւ վերջին մաս). — Այս հանդանակութեան յաջողութեան մեծապէս նպաստեց Պ. Կարապետ Փոլատեան:

✕ Շնորհակալութիւն նաեւ Կրընոպլէն մասնաւորապէս հրաւիրուած Մարտիրոսեան քոյրերու, որոնք առանց ոեւէ նիւթական ակնկալութեան իրենց մասնակցութիւնը բերելով սոյն հանդէսին, իրենց երգերով եւ պարերով խանդավառութիւն ստեղծեցին: Մասնաւոր շնորհակալութիւն նաեւ Մարսէյլի Քոնսէրվաթուարէն շրջանաւարտ Օր. Ալիս Ժամկոչեանի, որ իր սիրայօժար մասնակցութիւնը բերաւ վերոյիշեալ քոյրերու երգերուն եւ պարերուն մասնակցութեամբ դաշնակի եւ որ իր դայթարմայով մեծ ոգեւորութիւն ստեղծեց ներկաներու մէջ:

✕ Վարչութիւնը իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ Տէր եւ Տիկին Արմենակ Շահպալեանի, իրենց քեռայրին՝ ողբացեալ Պ. Մկրտիչ Փողհարեանի դառնաղէտ մահուան առթիւ եւ շնորհակալութեամբ կ'արձանագրէ փոխան ծաղկեպսակի հազար ֆրանքի նուէրը, ի նպաստ Կապոյտ Խաչի:

ՄԱՐՍԷՅԼ. — Ֆ. Կ. Խաչի Սէն Լուի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Խաչիկ Յովհաննէսեանէ ողբացեալ Պ. Գէորգ Մենտոտեանի մահուան առթիւ 1500 Ֆր. փոխան ծաղկեպսակի: Նոյնպէս Տիկին Սաթենիկ Եօթնեղբայրեանի կողմէ 500 Ֆր. Նոր Տարուան առթիւ:

ՆՈՐ ՍՏԱՑԱՆՔ

## ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆ
## ՎԵՐՅԻՇՈՒՄՆԵՐ
## (ԹԱԼԷԱԹԻ ԱՀԱԲԵԿՈՒՄԸ)

Գրի առաւ Վահան Մինախորեան: Պատկերազարդ, 475 մեծադիր էջ, ընտիր տպագրութեամբ:

Գին (թղթակազմ) հազար ֆրանք: (Թղթատարի ծախքով 1100 ֆրանք):

Սակաւաթիւ օրինակներ ունինք լաթակազմ, գին 1200 ֆրանք: (Թղթատարի ծախքով 1300 ֆրանք):

Ֆրանսայի եւ հարեւան երկիրներու համար դիմել ՅԱՌԱՋի վարչութեան:

## ԵՐԳԱՀԱՆԴԷՍ

THEATRE G. VERDI

56, Rue d'Alger, Marseille

Շաբաթ, 23 Յունուար ժամը 21ին

Նախաձեռնութեամբ ԱՐՄԵՆԻԱ երգչախումբին եւ մասնակցութեամբ Ֆ. Կ. Խաչի, Բարեգործականի, Երիտ. Միութեան, Համազգայինի, Մշ. Միութեան, Վասպուրականի Հայր. Միութեան եւ Արեւնուշներու Միութեան:

Հրաւիրուած է յայտնի երգչուհի՝

## ԱՐՓԻՆԷ ԱՐՂՈՒԹԵԱՆ

Ցայտագիր. — Ռախմանինով, Չայքովսքի, Պռամս, Սէն Սանս, Կոմիտաս վրդ., Ռ. Մելիքեան, Խաչատուրեան, Ալէմշահ, Վ. Սարգսեան:

### ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎՐԱՅ

Պրեմոնի մրցանակի կոմիտէն շարք մը դասախօսութիւններ սարքած է:

Առաջինը՝ այս երեքշաբթի ժամը ճիշդ 20.45ին:

Կը դասախօսէ նախագահ

LOUIS MARIN, Membre de l'Institut

Նիւթը՝ ԲՆԱՆԿԱՐՆԵՐ ՀԱՅԱՍՏԱՆԷՆ

SALLE DEBUSSY-PLEYEL

252, Fbg. St. Honoré

ԱՄԵՆԱԸՆՏԻՐ ԵՒ ՄՆԱՅՈՒՆ ՆՈՒԷՐԸ՝
ՁԵՐ ՍԻՐԵԼԻՆԵՐՈՒՆ եւ ՁԵՐ
ԲԱՐԵԿԱՄՆԵՐՈՒՆ ՀԱՅ ԿԱՄ ՕՏԱՐ
ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

LUC-ANDRE MARCEL-ի

## GRÉGOIRE DE NAREK
et
ANCIENNE POESIE ARMENIENNE

(Ed. des Cahiers du Sud)

կոթողային հատորը

Գեղարուեստական մաքուր հրատարակութիւն, ուր հեղինակը ի վեր կը հանէ ԳՐԻԳՈՐ ՆԱՐԵԿԱՑԻԻ հանճարը, եւ համաշխարհային արժէքը հայ բանաստեղծութեան: Գին՝ 1000 ֆրանք:

Դիմել՝ «Անդաստանի» խմբագրութեան, տպ. Արաքս 46, Rue Richer, Paris կամ «Յառաջ»ի:

## ԹԷՅԱՍԵՂԱՆ

Ի ՊԱՏԻՒ ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԸՆԿ. ՊԱՏՈՒՈՅ ԱՆԴԱՄՆԵՐՈՒՆ ՄԱՐՍԷՅԼ

Այս Կիրակի իրիկուն, ժամը 9ին, Քաֆէ Նօայի սրահը:

Սիրով կը հրաւիրուին նաեւ համակիրներ: Մուտքը ազատ է



### SURPRISE PARTY

Նախաձեռնութեամբ Նոր Սերունդի Փարիզի Շրջ. Վարչութեան, այս կիրակի ժամը 15էն 22, Ազգ. Տան մէջ:

Կը հրաւիրուին Միութեան բոլոր անդամները եւ համակիրները:

ՃՇԴՈՒՄ. — Լիոնի Ազգ. Միութիւնը կը յայտարարէ թէ Հայկազ. մանկապարտէզի հանդէսը տեղի պիտի ունենայ Յունուար 24ին, կիրակի կէսօրէ վերջ ժամը երեքին, Օրլօժի սրահին մէջ: Կը հրաւիրուի հասարակութիւնը, քաջալերել մեր մանուկները:



Imp. Araxes - 46, Rue Richer, Paris (9e)

